Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԻԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 10

ՄԱՅԻՍ 1946 Թ.

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

...ետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 10

ՄԱՅԻՍ 1946 Թ.

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ՀՐԱՄԱՆ

## ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԻ ՄԻՆԻՍՏՐԻ

### 1 ՄԱՅԻՍԻ 1946 Թ. № 7 ՔԱՂ. ՄՈՍԿՎԱ

Ընկեր կարմիրբանակայիննե՛ր և կարմիր նավատորմայիննե՛ր, սերժանտնե՛ր և սպանե՛ր: Ընկեր սպանե՛ր, գեներալնե՛ր և ադմիրալնե՛ր:

Սովետական Միության աշխատավորնե՛ր:

Այսօր, Հայրենական մեծ պատերազմի հաղթական ավարտումից հետո առաջին անգամ, մենք Մայիսի Մեկը՝ աշխատավորության միջազգային տոնը՝ անց ենք կացնում խաղաղ կյանքի պայմաններում, որ նվաճված է թշնամիների դեմ մղված ծանր պայքարում, մեծ զոհերի և զրկանքների գնով:

Մեկ տարի առաջ Կարմիր Բանակը հաղթանակի դրոշը բարձրացրեց Բեռլինի վրա

և ավարտեց ֆաշիստական Գերմանիայի ջախջախումը: Գերմանիայի դեմ պատերազմի հաղթական ավարտումից չորս ամիս հետո, զենքը ցած դրեց իմպերիալիստական Ճապոնիան: Միջազգային ռեակցիայի ուժերի նախապատրաստած և ֆաշիստական գլխավոր պետությունների հրահրած երկրորդ համաշխարհային պատերազմը վերջացավ ազատասեր ժողովուրդների լիակատար հաղթանակով:

Ֆաշիզմի և համաշխարհային ագրեսիայի հիմնական օջախների ջախջախումն ու լիկվիդացիան խոր փոփոխություններ առաջ բերեցին աշխարհի ժողովուրդների քաղաքական կյանքում, ժողովուրդների մեջ լայնորեն անեցրին դեմոկրատական շարժումը: Պատերազմի փորձով հարստացած ժողովրդական մասսաները հասկացան, որ պետությունների բախտը չի կարելի վստահել նեղ-կաստայական և հակաժողովրդական, շահամոլ նպատակներ հետապնդող ռեակցիոն կառավարողներին: Հենց դրա համար էլ ժողովուրդները, չցանկանալով այլևս հին ձևով ապրել, իրենց պետությունների բախտը վերցնում են իրենց ձեռքը, հաստատում են դեմոկրատական կարգեր և



ակտիվ պայքար են մղում ռեակցիայի ուժերի դեմ, նոր պատերազմի հրձիգների դեմ:

Աշխարհի ժողովուրդները չեն ցանկանում պատերազմի աղետների կրկնություն: Նրանք համառորեն պայքարում են խաղաղությունը և անվտանգությունը ամրապնդելու համար:

Խաղաղության և անվտանգության համար մղվող պայքարի ավանգարդում ընթանում է Սովետական Միությունը, որը նշանավոր դեր խաղաց ֆաշիզմի ջախջախման գործում և կատարեց իր ազատագրական մեծ միսիան:

Սովետական Միության կողմից ֆաշիստական լծից ազատագրված ժողովուրդները հնարավորություն ստացան դեմոկրատական սկզբունքներով կառուցելու իրենց սպետական կյանքը, իրականացնելով իրենց պատմական իղձերը: Այդ ճանապարհի վրա նրանք եղբայրական օգնություն են ստանում Սովետական Միության կողմից:

Ամբողջ աշխարհը հնարավորություն ունեցավ համոզվելու Սովետական պետության ո՛չ միայն հզորության, այլև նրա քաղաքականության արդարացի բնույթի

մեջ, որը հիմնված է բոլոր ժողովուրդների իրավահավասարությունը ճանաչելու, նրանց ազատությունը և անկախությունը հարգելու վրա: Ո՛չ մի հիմք չկա տարակուսելու, որ Սովետական Միությունը այսուհետև ևս հավատարիմ կլինի իր քաղաքականությանը, խաղաղության ու անվտանգության քաղաքականությանը, ժողովուրդների իրավահավասարության և բարեկամության քաղաքականությանը:

Սովետական Միությունը պատերազմը ավարտելուց հետո անցավ սոցիալիստական խաղաղ շինարարությանը: Սովետական մարդիկ ոգևորությամբ ձեռնամուխ եղան պատերազմի ընդհատած խաղաղ, ստեղծագործ աշխատանքին:

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին Սովետական Միության Գերագույն Սովետի ընդունած Օրենքը բաց է անում մեր Հայրենիքի արտադրողական ուժերի հետագա աճման, նրա տնտեսական հզորության աճման, նրա



նյութական բարեկեցության և կուլտուրայի վերելքի նոր հեռանկարներ:

Մեր երկրի բանվորները, գյուղացիները և ինտելիգենցիան հնգամյա պլանն ընդունեցին որպես իրենց կենսական շահերին համապատասխանող մարտական ծրագիր: Կարելի է հուսալ, որ սովետական մարդիկ, Կոմունիստական Պարտիայի գլխավորությամբ, ուժ և աշխատանք չեն խնայի նոր հնգամյակը ո՛չ միայն կատարելու, այլև գերակատարելու համար:

Ծավալելով սոցիալիստական խաղաղ շինարարությունը, մենք ոչ մի րոպե չպետք է մոռանանք միջազգային ռեակցիայի ոտնձգությունների մասին, որը սնուցանում է նոր պատերազմի պլաններ: Անհրաժեշտ է հիշել մեծ Լենինի այն ցուցումները, որ, անցնելով խաղաղ աշխատանքի, պետք է շարունակ զգաստ լինել, աչքի լույսի պես պահպանել մեր երկրի զինված ուժերը և պաշտպանունակությունը:

Սովետական Միության Զինված Ուժերը՝ մեր Ցամաքային զորքերը, Ռազմա-օդային ուժերը և Ռազմա-ծովային Նավատորմը՝ Հայրենական մեծ պատերազմի ժամանակ

կատարեցին իրենց պարտքը Հայրենիքի հանդեպ:

Այժմ մեր Զինված ուժերի առաջ կանգնած է ոչ պակաս կարևոր խնդիր՝ արթուն կերպով պահպանել նվաճած խաղաղությունը և սովետական ժողովրդի ստեղծարար աշխատանքը, լինել Սովետական Միության շահերի հուսալի հենարանը:

Այդ պատվավոր խնդրի հաջող կատարումը հնարավոր է միայն մեր Բանակի, մեր Նավատորմի, մեր Ավիացիայի մարտիկների ու հրամանատարների ռազմական կուլտուրայի և ռազմական վարպետության հետագա աճման պայմանով:

Սովետական Միության Զինված ուժերը պատերազմի փորձի հիման վրա, ռազմական գիտության ու տեխնիկայի զարգացման հիման վրա պետք է օրավուր բարձրացնեն իրենց ռազմական արվեստի մակարդակը:

Կարելի է չտարակուսել, որ մեր Բանակը, մեր Նավատորմը և մեր Ավիացիան պատվով կկատարեն իրենց առաջ կանգնած խնդիրները:

Ընկեր կարմիրբանակայիննե՛ր և կարմիրնավատորմայիննե՛ր, սերժանտնե՛ր և



ավագնե՛ր: Ընկեր սպանե՛ր, գեներալնե՛ր և ադմիրալնե՛ր:

Ընկեր բանվորնե՛ր և բանվորուհինե՛ր, գյուղացինե՛ր և գեղջկուհինե՛ր, մտավոր աշխատանքի մարդի՛կ:

Կարմիր Բանակի շարքերից զորացրված ռազմիկնե՛ր:

Կառավարության և Կոմունիստական Պարտիայի անունից ողջունում և շնորհավորում եմ Ձեզ Մայիսի Մեկի օրվա առթիվ:

Ի նշանավորումն աշխատավորության միջազգային տոնի ՀՐԱՄԱՅՈՒՄ ԵՄ.

Այսօր, մայիսի 1-ին, սալյուտ տալ մեր Հայրենիքի մայրաքաղաքում՝ Մոսկվայում, միութենական ռեսպուբլիկաների մայրաքաղաքներում, ինչպես նաև Լվովում, Քյոնիգսբերգում, Խաբարովսկում, Վլադիվոստոկում, Պորտ-Արտուրում և հերոս քաղաքներում՝ Լենինգրադում, Ստալինգրադում, Սևաստոպոլում և Օդեսայում հրետանային քսան համազարկով:

Կեցցե՛ն մեր քաջարի Զինված Ուժերը։
Կեցցե՛ մեր պանծալի Կոմունիստական Պարտիան։
Կեցցե՛ սովետական մեծ ժողովուրդը։
Կեցցե՛ մեր հզոր Սովետական Հայրենիքը։

ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԻ ՄԻՆԻՍՏՐ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՆԵՐԱԼԻՍՍԻՄՈՒՍ

Ի. ՍՏԱԼԻՆ

---

# ՀՐԱՄԱՆ

## ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԻ ՄԻՆԻՍՏՐԻ

9 ՄԱՅԻՍԻ 1946 Թ. № 11 ՔԱՂ. ՄՈՍԿՎԱ

Ընկեր կարմիրբանակայիննե՛ր և կարմիրնավատորմայիննե՛ր, սերժանտնե՛ր և ավագնե՛ր։ Ընկեր սպանե՛ր, գեներալնե՛ր և ադմիրալնե՛ր։

Սովետական Միության աշխատավորնե՛ր։

Այսօր մենք տոնում ենք մեր Հայրենիքի ազատության և անկախության նկատմամբ ոտնձգություն կատարած ֆաշիստական Գերմանիայի դեմ մեր ժողովրդի տարած մեծ հաղթանակի առաջին տարեդարձը։

Սովետական Կառավարության և մեր Կոմունիստական Պարտիայի անունից ողջունում և շնորհավորում եմ ձեզ համաժողովրդական ցնծության օրվա՝ գերմանական ֆաշիզմի դեմ տարած ՀԱՂԹԱՆԱԿԻ Տոնի առթիվ։

Ի նշանավորումն ՀԱՂԹԱՆԱԿԻ Տոնի ՀՐԱՄԱՅՈՒՄ ԵՄ՝

Այսօր, մայիսի 9-ին, սալյուտ տալ մեր Հայրենիքի մայրաքաղաքում՝ Մոսկվայում, միութենական ռեսպուբլիկաների մայրաքաղաքներում, ինչպես նաև Լվովում, Քյոնիգսբերգում և հերոս քաղաքներում՝ Լենինգրադում, Ստալինգրադում, Սևաստոպոլում ու Օդեսայում՝ հրետանային երեսուն համազարկով:

Փա՛ռք մեր Զինված Ուժերին, որոնք պաշտպանեցին մեր Հայրենիքի պատիվն ու անկախությունը և հաղթանակ նվաճեցին հիտլերյան Գերմանիայի դեմ:

Փա՛ռք Համամիութենական Կոմունիստական Պարտիային՝ մեր հաղթանակների ոգեշնչողին ու կազմակերպչին:

Փա՛ռք մեր մեծ ժողովրդին, հաղթող ժողովրդին:

Հավերժ փա՛ռք մեր Հայրենիքի ազատության և անկախության համար մղված մարտերում զոհված հերոսներին:

ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԻ ՄԻՆԻՍՏՐ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՆԵՐԱԼԻՍՍԻՄՈՒՍ

Ի. ՍՏԱԼԻՆ

ՍՍՌՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏՈՒՄ

# ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՆԳՆՄԱՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՊԵՏԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆ ԲԱՑ ԹՈՂՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հնգամյա պլանը կատարելու համար բնակչության միջոցները ներգրավելու, ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակը բարձրացնելու և երկրի ռազմա-տնտեսական հզորությունն է՛լ ավելի ամրապնդելու նպատակով, ՍՍՌ Միության Մինիստրների Սովետը ՈՐՈՇԵՑ.

1. Բաց թողնել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման Պետական Փոխառություն 20 միլիարդ ռուբլի գումարով, 20 տարի ժամկետով:

2. Փոխառության պարտատոմսերը և նրանցից ստացվող եկամուտները, այդ թվում շահումները, ազատել պետական և տեղական հարկերից ու գանձումներից:

3. Հաստատել ՍՍՌՄ Ֆինանսների Մինիստրության կողմից ներկայացված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման Պետական Փոխառություն բաց թողնելու պայմանները:

## ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ՖԻՆԱՆՍՆԵՐԻ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Ս. թ. մայիսի 4-ին 20 միլիարդ ռուբլու գումարով բաց թողնված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման պետական փոխառությունը 7 օրվա ընթացքում իրացվել է 21 միլիարդ 817 միլիոն 963 հազար ռուբլի գումարով, գերազանցելով նախատեսված գումարը մեկ միլիարդ 817 միլիոն 963 հազար ռուբլով:*

*Այս կապակցությամբ ՍՍՌՄ Ֆինանսների Մինիստրությունը, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ցուցումի հիման վրա կարգադրություն է արել 1946 թվի մայիսի 12-ից փոխառության հետագա բաժանեգրությունը ամենուրեք դադարեցնել:*

ՍՍՌՄ Ֆինանսների Մինիստր
Ա. ԶՎԵՐԵՎ

*11 մայիսի 1946 թ.*



***

*Առ 12-ը մայիսի Հայկական ՍՍՌ-ում փոխառության բաժանեգրության գումարը հասավ 173 միլիոն 320 հազար ռուբլու: Փոխառության իրացման կոնտրոլ թիվը արդեն գերակատարված է 8 միլիոն 320 հազար ռուբլով: Բաժանեգրության գումարից կանխիկ մուծված է 75 միլիոն 730 հազար ռուբլի:*

# ՄԵՐ ԱԳԻՏԱՑԻՈՆ-ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԽՆԴԻՐԸ

*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման հնգամյա պլանի մասին Օրենքի հրապարակմանը մեր երկրի աշխատավորությունը դիմավորեց բուռն խանդավառությամբ։ Եվ դա հասկանալի է։ Նոր հնգամյա պլանը իսկական ժողովրդական պլան է, նա մեր Հայրենիքի միլիոնավոր աշխատավորների կամքի փայլուն դրսևորումն է, նրանց իղձերի ու ձգտումների պերճախոս արտահայտությունը։*

*Այդ պլանի մասին Օրենքի հրապարակմանը մեր ժողովուրդը պատասխանեց՝* հնգամյակը կկենսագործվի։

*Այդ լակոնիկ արտահայտության մեջ խոր իմաստ կա պարունակված։ Սովետական ժողովուրդը փորձով համոզվել է, որ իր հարազատ բոլշևիկյան պարտիայի ու Սովետական կառավարության կողմից տրված ամեն մի առաջադրանքի կատարումը մի նոր*



*քայլ է մեր Հայրենիքի ծաղկման ու հզորացման ճանապարհին, մի նոր էջ՝ ժողովուրդների բարօրության համար մղվող պայքարում։*

*Սովետական ժողովուրդը հնգամյա պլանն ընդունեց որպես իր կյանքի և աշխատանքի մարտական ծրագիր և մեծ ոգևորությամբ ձեռնամուխ եղավ նրա կենսագործմանը։*

*Բայց այդ նշանակո՞ւմ է արդյոք, որ այլևս հարկ չկա մասսայական-քաղաքական աշխատանք տանել Օրենքի բացատրության, բոլոր աշխատավորներին հնգամյա պլանի կատարման համար մոբիլիզացնելու ուղղությամբ։ Իհարկե ոչ։ Այժմ, քան երբևիցե, մեծ ու պատասխանատու խնդիրներ են դրված մեր պարտիական կազմակերպությունների առաջ՝ ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի բնագավառում։ Այդ աշխատանքը պետք է էլ ավելի լայն ծավալ ընդունի և կանգնի մեր յուրաքանչյուր պարտիական կազմակերպության ուշադրության կենտրոնում։*

*Հնգամյա պլանի Օրենքի կապակցությամբ տարվող ագիտացիոն և պրոպագանդիստական աշխատանքը չի կարող դիտվել որպես մի կարճատև կամպանիա։ Ընդհա-*

կառակը. այն պետք է նայվի որպես մեր պարտիայի ագիտացիոն ու պրոպագանդիստական ողջ աշխատանքի կարևորագույն ու բաղկացուցիչ մասը՝ առաջիկա ժամանակաշրջանում։

Հնգամյա պլանը նոր ու պայծառ հեռանկարներ է գծում ինչպես ամբողջ երկրի, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի առաջ։

Բավական է ասել, որ նոր հնգամյակում Հայկական ՍՍՌ արդյունաբերության արտադրանքի ծավալը աճելու է ավելի քան երկու անգամ։

Մեր ռեսպուբլիկան հինգ տարի հետո կունենա մի շարք նոր ու ավելի հզոր հիդրոէլեկտրոկայաններ, վիթխարի չափերով աճելու է մեր արդյունաբերության ամենատարբեր ճյուղերի արտադրանքը, կառուցվելու են մի շարք նոր գործարաններ։

Հնգամյա պլանի կատարումը բուռն ծաղկում կբերի նաև մեր սոցիալիստական գյուղատնտեսությանը, ժողովրդական առողջապահությանն ու կուլտուրային, գիտությանն ու արվեստին։

Մեր ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի առաջնահերթ խնդիրն է՝ հնգամյա պլանի մասին Օրենքը հասցնել մեր



ամեն մի աշխատավորի գիտակցությանը։

Հնգամյա պլանի կենսագործման համար մղվող պայքարի հաջողությունը կախված է այն բանից, թե ինչպիսի հաջողությամբ են կատարվում ընթացիկ տնտեսական աշխատանքների պլանները։ Յուրաքանչյուր աշխատավորի մեջ պետք է արմատավորել այն պարզ միտքը, որ չի կարելի ամսվա պլանը կատարել, եթե չի կատարվում ամենօրյա առաջադրանքը։ Այնպես էլ չի կարելի հույս դնել տարվա առաջադրանքի կատարման հաջողության վրա, եթե ամիսների ու կվարտալների ընթացքում բանվորը, կոլխոզնիկը, գործարանը կամ կոլխոզը թերակատարել են իրենց առաջադրանքները։

Ամեն մի աշխատավոր պետք է լավ հիշի, որ **հնգամյա պլանը հնարավոր է կենսագործել միայն ընթացիկ աշխատանքների կատարման ու գերակատարման ճանապարհով**։ Իսկ դրան հասնել կարելի է այն ժամանակ, երբ յուրաքանչյուր մարդ աշխատի որքան կարելի է լավ, որքան կարելի է արդյունավետ, չխնայելով իր ուժերն ու կարողությունները։ Հենց այդ էլ պահանջվում է սովետական մարդկանցից, դրա մեջ է համաժողովրդական մեծ գործի

—ստալինյան նոր հնգամյակի կենսագործման գլխավորն է։

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ սիստեմատիկաբար օգտագործել ագիտացիոն և պրոպագանդիստական աշխատանքի բոլոր ձևերն ու հնարավորությունները և բացատրել մեր աշխատավորներին, որ յուրաքանչյուր սովետական մարդու լարված ու անձնվեր աշխատանքից է կախված հնգամյա պլանի անթերի կենսագործումը և մեր Հայրենիքի հզորության հետագա ամրապնդումը։

Մեր արդյունաբերության և գյուղատնտեսության արտադրանքի բարձրացման գործում առաջիկայում ևս մեծ դեր է վիճակված կատարելու սոցիալիստական մրցությանը։

Սոցիալիստական աշխատանքի այդ մեթոդի գործադրումը վճռական նշանակություն ունեցավ ստալինյան երեք հնգամյակների համար մղված պայքարում. նա վիթխարի դեր խաղաց պատերազմի տարիներին՝ Կարմիր Բանակի համար սպառազինություն, պարեն ու հանդերձանք արտադրելու գործում։ Սոցիալիստական մրցությունը վճռական նշանակություն է ունենալու ստալինյան 4-րդ հնգամյակի առաջա-



դրանքների կատարման համար մղվող պայքարում։

Պարտիական կազմակերպությունների պարտքն է. կազմակերպել և գլխավորել սոցիալիստական մրցությունը, այն հաշվով, որպեսզի այդ մրցության մեջ ներգրավվեն էլ ավելի շատ մարդիկ, էլ ավելի հուժկու դառնա մրցության թափն ու ծավալը։ Միայն այդ ճանապարհով կհաջողվի մեզ կատարել ու գերակատարել ընթացիկ տնտեսական պլանները և դրանով էլ կչափվի յուրաքանչյուր պարտիական կազմակերպության կատարած աշխատանքը։

Պարտիական կազմակերպությունները մեծ ուշադրություն պետք է դարձնեն հնգամյա պլանի մասին աշխատավորների համար զեկուցումների և զրույցների կազմակերպմանը։ Այդ լույս պրոպագանդիստական աշխատանքը պետք է ընդգրկի հետևյալ թեմաները.

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հնգամյա պլանի կապակցությամբ. «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հնգամյա պլանի հիմնական խնդիրները», «Արդյունաբերության և ար-

տրանսպորտի զարգացման պլանը նոր հնգամյակում», «ՍՍՌՄ գյուղատնտեսության զարգացման պլանը 1946—1950 թ. թ.», «Ժողովուրդների նյութական և կուլտուրական կենսամակարդակի բարձրացումը որպես 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի կարևորագույն խնդիրը», «Միութենական ռեսպուբլիկաների ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հնգամյա պլանը որպես ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիր», «ՍՍՌՄ-ում սոցիալիստական հասարակարգի կառուցումը ավարտելու ուղիները և աստիճանաբար սոցիալիզմից կոմունիզմին անցնելը», «Սովետական գիտության դերը մեր Հայրենիքի հետագա ծաղկման համար մղվող պայքարում»: Զեկուցումներ և զրույցներ պետք է կազմակերպել նաև Հայաստանի հնգամյա պլանի կապակցությամբ, ընդգրկելով այդ պլանի հիմնական հատվածները:

Այդ զեկուցումներն ու զրույցները տեղերում անց են կացվում մեր լավագույն պրոպագանդիստական ուժերի միջոցով: Այդ գործին իրենց մասնակցությունն են բերում մեր պարտիական, սովետական ու տնտեսական ղեկավար աշխատողները:



Սակայն գործը մեկ-երկու զրույցով, կամ զեկուցումով չի կարող ավարտված համարվել: Անհրաժեշտ է, որպեսզի ամեն մի աշխատավոր, և առաջին հերթին ամեն մի կոմունիստ լավ ուսումնասիրի Օրենքը: Այդ նպատակով կազմակերպվում է հնգամյա պլանի ուսումնասիրությունը քաղխմբակներում, բարձրագույն դպրոցներում և տեխնիկումներում:

Մեր պարտիական կազմակերպությունների անհետաձգելի պարտքն է՝ բանավոր պրոպագանդայի լայն ծավալին ու թափին զուգակցել գրավոր պրոպագանդայի մեծ հնարավորությունները:

Մեր մամուլը, առանձնապես ռեսպուբլիկական և շրջանային թերթերը հսկայական աշխատանք ունեն կատարելու հնգամյա պլանի խնդիրները լայնորեն լուսաբանելու, մասսաներին այդ պլանի հաջող կատարման համար ոգեշնչելու և կազմակերպելու գործում: Այդ ուղղությամբ, անշուշտ, մեր թերթերը որոշ աշխատանք կատարել են, բայց բնավ չի կարելի գործն ավարտած համարել: Տպագրվող նյութերի քանակին պետք է զուգորդի որակը: Ցավոք պիտի նշել, որ մեր թերթերի էջերում տեղ

գրված ու բոլոր նյութերն են բարձր իրենց որակով։

Մեր թերթերում կամ ամսագրերում տպագրվող յուրաքանչյուր հոդված, ակնարկ կամ թղթակցություն պետք է անթերի լինի իր կատարմամբ, հստակ իր լեզվով, սկզբունքային ու նպատակասլաց։ Հնգամյա պլանի հոյակապ խնդիրները պահանջում են իրենց արժանի արտացոլումը մեր մամուլի էջերում։ Բանիմաց, իսկական բոլշևիկ-լրագրողը հնգամյակի համար մղվող պայքարի ընդհանուր եռքի մեջ կգտնի հետաքրքիր ու բազմազան շատ թեմաներ։

Թերթերը սիստեմատիկաբար պետք է պրոպագանդիստական հոդվածներ տպագրեն հնգամյա պլանի հիմնական հատվածների մասին, լայնորեն լուսաբանեն սոցիալիստական մրցության ընթացքը, էլ ավելի բորբոքեն մրցության կրակը՝ նոր հնգամյա պլանի կատարման ու գերակատարման համար մղվող պայքարում։

Թերթերը պարտավոր են ո՛չ միայն ցույց տալ և մասսայականացնել առաջավոր ձեռնարկությունների աշխատանքի դրական փորձը, այլև համարձակորեն, մեր մամուլին



հատուկ անողոքությամբ, քննադատել նկատվող թերությունները և դրանց կոնկրետ կրողներին։

Մեր պարտիական կազմակերպությունները օգտագործելով ագիտացիոն և պրոպագանդիստական աշխատանքի բոլոր ձևերը կկազմակերպեն մասսաներին ստալինյան չորրորդ հնգամյակի պլանների անթերի կատարման և գերակատարման, մեր Հայրենիքի հետագա ծաղկման ու հզորացման համար մղվող մեծ պայքարում։

## ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՉՈՐՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Ծխախոտը, բամբակը, շաքարի ճակնդեղը, շերամապահությունը մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ կարևորագույն նշանակություն ունեն։ Այդ կուլտուրաներից մեր կոլխոզները վիթխարի եկամուտներ են ստանում։ Նոր հնգամյակում մեր խնդիրն է՝ տեխնիկական կուլտուրաների բերքատվության աննախընթաց բարձրացման ճանապարհով է՛լ ավելի շատացնել այդ եկամուտները, բավարարել բնակչության օրավուր աճող պահանջները և արդյունաբերությանը առատ հումք մատակարարել։

Մեզ մոտ զարգացման մեծ հեռանկարներ ունի թանկարժեք տեխնիկական կուլտուրա հանդիսացող ծխախոտը, որը լայն չափով արմատացվել է մեզանում ստալինյան հնգամյակների ընթացքում։ Ներկայումս Հայաստանի կոլխոզների մեկ երրորդը զբաղվում է ծխախոտագործությամբ։ 1940 թվի



համեմատությամբ, չորրորդ հնգամյակում ծխախոտի ցանքատարածությունը ընդարձակվելու է 100 տոկոսով և կկազմի 10 հազար հեկտար։ Ցանքատարածությունը ընդլայնելու հետ միասին մեծ ուշադրություն է նվիրվում բերքատվության բարձրացմանը, որը 1945 թվի համեմատությամբ պետք է կրկնապատկվի և կկազմի միջին հաշվով 9—10 ցենտներ ծխախոտի չոր տերև՝ յուրաքանչյուր հեկտարից։ Ծխախոտագործության զարգացման ասպարեզում այդպիսի բարձր մակարդակի հասնելու համար, ծխախոտի պլանտացիաներում ագրոտեխնիկական միջոցառումների կոմպլեքսը կիրառելուց բացի, կպահանջվի ստեղծել լուրջ տեխնիկական բազա։ Հայտնի է, որ ծխախոտի բարձր բերք ստանալու համար մեծ նշանակություն ունի որակավոր սածիլի ժամանակին աճեցումը։ Այդ պատճառով մեծ ուշադրություն է դարձվում ջերմոցային տնտեսություն ստեղծելու գործին, որը կապահովի յուրաքանչյուր հեկտարի համար 100—120 հազար ծխախոտի սածիլի աճեցումը։ Հնգամյակի տարիներում կկառուցվի 300 հազար քառակուսի մետր ապակեպատ ջերմոց։ Ծխախոտի տերևը չորացնելու և նախնական մշակման

ներմուծելու համար կպահանջվի ստեղծել պլանտացիոն— տեխնիկական նոր շենքեր (չորանոցներ, տեսակավորման և հակավորման շենքեր)։ Գոյություն ունեցող չորանոցներից բացի, հինգ տարվա ընթացքում պետք է կառուցվեն մոտ 3 հազար աչք արևի չորանոցներ, հարյուրավոր հակավորման շենքեր և ավելի քան 100 արհեստական չորանոց։

Զգալի աշխատանք է կատարվելու նոր հնգամյակում բամբակի մշակման գծով։ Այդ կուլտուրային հատկացվելու է 15 հազար հեկտար տարածություն և յուրաքանչյուր հեկտարից նախատեսվում է ստանալ 21 ցենտներ բերք։

Ընդլայնվում է նաև շաքարի ճակնդեղի ցանքատարածությունը հատկապես Լենինականի հարթավայրում և Սպիտակի շրջանում։ Շաքարի ճակնդեղի բերքատվությունը կավելացվի երկու անգամ և ռեսպուբլիկայում միջին հաշվով այն կկազմի 200 ցենտներ՝ մեկ հեկտարից։ Ճակնդեղի բերքը լիովին կապահովի Ղամարլվի շաքարի գործարանի բեռնվածությունը։

Առաջիկա հնգամյակում եթերայուղային կուլտուրաները Հայաստանում լուրջ նշանակություն են ստանում։ Խորդենու և կա-



զանլիկի վարդի արտադրության ասպարեզում, որոնք խիստ կարևոր նշանակություն ունեն սննդի և պարֆյումերիայի արդյունաբերության համար, Հայկական ՍՍՌ-ն կդառնա միութենական արդյունաբերությունը եթերայուղերով ապահովող հիմնական շրջաններից մեկը։ Բացի Հոկտեմբերյանի և Էջմիածնի շրջաններից, որտեղ այդ կուլտուրաները տալիս են բարձր բերք և բարձրորակ յուղեր, եթերայուղային կուլտուրաներ կմշակվեն նաև մի շարք լեռնային շրջաններում՝ Կոտայքում, Թալինում և այլն։

Հայաստանի գյուղատնտեսության կարևորագույն ճյուղը, որը պետք է լայն կերպով զարգացվի նոր հնգամյակում, դա շերամապահությունն է։ Մեզանում եղած բարենպաստ պայմանները ժողովրդական տնտեսության այդ ճյուղը չափազանց եկամտաբեր են դարձնում։ Բոժոժի բերքատվության տեսակետից մեր ռեսպուբլիկան Միության մեջ գրավում է առաջին տեղը, տալով միջին հաշվով մի տուփ սերմից 55 կիլոգրամ բոժոժ, Միության մեջ ստացվող 40 կիլոգրամի դիմաց։ Չնայած դրան, կան լրացուցիչ հնարավորություններ մեկ տուփ

սերմից է՝ ավելի շատ բերք ստանալու համար։

Տեխնիկական կուլտուրաների բերքատվության զգալի բարձրացումը կախված է ոչ միայն կոլխոզային դաշտերում մշակման բարձր ագրոտեխնիկայի իրագործումից, այլև աշխատատար պրոցեսների լրիվ մեքենայացումից և գործածվող հանքային պարարտանյութերի քանակությունը ավելացնելուց։

Չորրորդ հնգամյակի պլանով բամբակի մշակույթի աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումը պետք է հասցվի առավելագույն չափի։ Այնպիսի աշխատանքներում, ինչպիսիք են գարնանավարը, ցրտահերկը, ցրտահերկի կուլտիվացիան, նախացանքային մշակումը և բամբակենու ցանքը, տրակտորային մեքենայացումը կհասցվի 90 տոկոսի։ Բամբակի պլանտացիաների կեսից ավելին կմշակվի տրակտորային մեքենաներով, իսկ առանձին մեծ մասսիվներում՝ լայն կերպով կօգտագործվի նաև ավիասրսկումը։ Մեքենայացումը կօգտագործվի և բերքահավաքի աշխատանքներում։

Առանձնապես մեծ ուշադրություն է նվիրվելու շաքարի ճակնդեղի ցանքը մշա-



կելու պրոցեսների մեքենայացմանը։

Եթե 1945 թվին ճակնդեղացան շրջաններում տրակտորներով կատարվել է միայն հերկը, տափանումը և մասամբ ցանքը, ապա նոր հնգամյակի տարիներում նախատեսվում է բոլոր աշխատանքների կոմպլեքսային մեքենայացումը։

Զգալի չափով մեքենայացվելու է նաև ծխախոտի մշակումը։ Բացի հերկը, նախացանքային աշխատանքները, ցանքերի կուլտիվացիան և ցրտահերկը, լայն կերպով պետք է մեքենայացվեն այնպիսի պրոցեսներ, ինչպիսիք են ծխախոտի տնկումը և տերևներ շարելը հատուկ մեքենաներով։

Նոր հնգամյակում գյուղատնտեսությունը և առաջին հերթին տեխնիկական կուլտուրաները կստանան հսկայական քանակությամբ պարարտանյութեր։ Հայաստանի քիմիական ձեռնարկությունների արտադրանքը լրիվին կապահովի ազոտային և ֆոսֆորային պարարտանյութերի պահանջը։

Հայկական ՍՍՌ-ում ստալինյան նոր հնգամյակի տարիներին ծավալվող սոցմրցման լայն աշխատանքները հնարավորություն կտան, օգտագործել ավելի քան քսան հազար հեկտար՝ նոր հողեր՝ տեխնիկական

և թանկարժեք բազմամյա կուլտուրաների համար։

Մեր առաջ տեխնիկական կուլտուրաների բերքատվության բարձրացման ասպարեզում դրված խնդիրները անխզելիորեն կապված են այս ասպարեզում կատարվող գիտահետազոտական աշխատանքների հետ։ Այդ պատճառով նոր կազմակերպված տեխնիկական կուլտուրաների հայկական գիտահետազոտական ինստիտուտը, նրա զոնալ կայանները և հենակետերը լուրջ խնդիրներ ունեն կատարելու՝ ագրոտեխնիկայի, մեքենայացման, սելեկցիայի, սերմնաբուծության, տեխնիկական կուլտուրաների սորտո-միկրո-ռայոնացման բնագավառում և մյուս ակտուալ հարցերի ասպարեզում, որոնք կապված են բերքատվության բարձրացման հետ։

Անհրաժեշտ է գիտահետազոտական աշխատանքը սերտորեն կապել արտադրության հետ, ընդհանրացնել բարձր բերքի առաջավոր փորձերի փորձը, գործնական օգնություն ցույց տալ կոլխոզներին՝ կանոնավոր ցանքաշրջանառություն, բարձր ագրոտեխնիկա կիրառելու բնագավառում։

Ստալինյան նոր հնգամյակում զգալի



ուշադրություն է նվիրվելու գյուղատնտեսության համար որակյալ կադրեր պատրաստելու գործին։ Բացի բարձրագույն կրթություն ունեցող մասնագետներից, որ տալիս է Երևանի Գյուղատնտեսական ինստիտուտը, պահանջվում են մեծ թվով միջնակարգ կրթություն ունեցող մասնագետներ, որ պետք է տան գոյություն ունեցող և նոր կազմակերպվող տեխնիկումները։

Հայաստանի կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները, գյուղատնտեսության բնագավառի բոլոր աշխատողները չեն խնայի իրենց ուժերն ու կարողությունները նոր հնգամյակում իրենց առաջ դրված խնդիրները պատվով կատարելու համար։

Ս. ՂԱԶԱՐՅԱՆ

(Հայկական ՍՍՌ Տեխնիկական կուլտուրաների մինիստր)

# ԿԱՌՈՒՑՈՂՆԵՐԻ ՄՈՏ

Աշխատանքի ընդմիջումներին կառուցող բանվորների մոտ է գալիս ագիտատոր Խաչիկ Մալումյանը։ Կառուցողները միշտ առանձին սիրով են սպասում նրա այցելությանը և երբ գալիս է նա, բոլորը հավաքվում են նրա շուրջը ու սպասում, թե ինչ հետաքրքիր նյութի մասին պիտի խոսի այդ օրը իրենց ագիտատորը։

Իսկ այդ օրը նա իսկապես որ խոսելու հետաքրքիր նյութ ուներ։ Նա արդեն մի քանի օր պատրաստվում էր սրտաբուխ, ջերմ խոսակցություն ունենալ մեր ռեսպուբլիկայի չորրորդ հնգամյակի հսկայական կառուցումներից մեկի՝ Կիրովականի ազոտի գործարանի շինարարության բանվորների հետ։

Ազոտի գործարանի շինարարության բազմամարդ կոլեկտիվը կոչված է կարևոր գործ կատարել Հայաստանի քիմիական արդյունաբերության զարգացման բնագավառում։

Այս նոր հնգամյակում ավարտվելու է



գործարանի շինարարությունը և այն հանձնվելու է շահագործման։ Այդ կապակցությամբ ազոտի գործարանի շինարարության պարտիական կազմակերպության, ինչպես նաև ողջ կոլեկտիվի առաջ ծառացել են մի շարք լուրջ խնդիրներ, որոնք պահանջում են բազմակողմանի քննարկում ու մանրակրկիտ ուսումնասիրություն։

Գործարանի շինարարության պարտիական կազմակերպությունը ելնում է հնգամյա պլանի Օրենքի ագիտացիայից։ Պարտիական կազմակերպությունը ձգտում է հասնել այն բանին, որ շինարարության ամեն՝մի բանվոր, ինժեներ, տեխնիկ, ամեն մի վարպետ լավ ուսումնասիրի այդ փաստաթուղթը, հիմնավորապես պատկերացնի այն մեծ դերն ու նշանակությունը, որն ունի իրենց գործարանը Հայաստանի քիմիական արդյունաբերության զարգացման մեջ։

Ահա այս մասին պետք է խոսեր այդ օրը ագիտատորը։

Զրույցը, ինչպես միշտ, սկսվեց աշխույժ ու պարզ մթնոլորտում։ Ընկ. Խաչիկ Մալումյանը նախ շինարարության բանվորներին ծանոթացնում է շինարարական բրի-

դաների աշխատանքային պլանների կատարման հետ:

— Հնգամյակը ոչ միայն մեր պայծառ ապագան է, այլև մեր ներկան: Հնգամյա պլանը իրականացնելու և մեր գործարանի շինարարությունը նախատեսված ժամկետին ավարտելու համար մեր ամեն մի շինարարական բրիգադա, ամեն մի վարպետ, քարտաշ ու որմնադիր, ամեն մի սևագործ բանվոր, արմատուրշիկ, հյուսն, ամեն մի ինժեներ ու տեխնիկ պետք է պայքարեն ամսվա ու եռամսյակային պլանների կատարման համար:

Ագիտատոր Խ. Մալումյանը մի պահ լռում է և հավաքվածների մեջ աչքերով փնտրում շինարարության առաջավորներին: Նա ուզում է, որ իր ագիտացիան ավելի ներգործող և ավելի ազդեցիկ լինի:

— Մեր գործարանի շինարարությունում ո՞վ է ստալինյան չորրորդ հնգամյակի պլանների կատարման առաջավորը: Ո՞ւմ բրիգադան է բոլորից առաջ: Ես ձեզ կասեմ: Այստե՞ղ է Կլիմենտի Կաչիկյանը: Այստեղ է: Այ, նայեցեք նրան: Մարտ ամսին նրա բրիգադան շինարարական պլանները կատարել է 280 տոկոսով: Ապրիլ ամսին կատարել է 300 տոկոսով: Մայիս



ամսի առաջին օրերի աշխատանքը ցույց է տալիս, որ աշխատանքային տեմպը այս բրիգադայում ոչ միայն չի թուլացել, այլև ավելի բարձրացել է: Ո՞րն է դրա պատճառը: Առաջինը, որ այս բրիգադայի աշխատողները սիրում են կառուցել, երկրորդը՝ նրանք իզուր չեն կորցնում աշխատանքային ոչ մի րոպե, երրորդը՝ այս բրիգադայում շատ բարձր ու շատ օրինակելի է աշխատանքային կարգապահությունը:

Ագիտատորի խոսքերը մեծ տպավորություն գործեցին բանվորների վրա: Նրանց մեջ սկսվեց աշխույժ շարժում...

— Իսկ ինչո՞վ է ետ մնում իմ բրիգադան,— փոքր ինչ շփոթվելով հարցրեց շինարարության առաջավոր բրիգադաներից մեկի բրիգադիր Սմբատ Հովհաննիսյանը:

— Իսկ ես իմ առաջնությունը ոչ ոքի չեմ զիջել: Հովհաննիսյանի ետևից ասաց երկուհարյուրական Մացակ Աբրահամյանը:

Ագիտատորը գոհ ժպտում է: Նա զգում է, որ իր խոսքերը շարժեցին ընկերների հետաքրքրությունը, նրանց մեջ է՛լ ավելի բարձրացրեց իրար հետ մրցելու ցանկությունը, իսկ ետ մնացողները պարզապես սկսեցին իրենց վատ զգալ:

— Հնգամյա պլանի կատարումը

մեզանից պահանջում է բարեխիղճ ու հրատակ աշխատանք,— շարունակում է ընկ. Խ. Մալումյանը,— գործարանի շինարարության պարտիական ու պրոֆմիութենական կազմակերպությունները Պատվո տախտակ են սահմանել։ Այդ Պատվո տախտակին բարձրացվելու են հնգամյա պլանների կատարման առաջավորները։

Վերսկսվում է աշխատանքը։ Ագիտատորը վեր է կենում և բանվորների խմբով շրջապատված գնում շինարարության վայրը։ Սկսվում է աշխատանքը, ամեն մեկը կատարում է իր գործը, սակայն նրանցից ոչ մեկը չի մոռանում ագիտատորի խոսքերը։

— Հնգամյակը ոչ միայն մեր պայծառ ապագան է, այլև մեր ներկան։

Բ. ՄԵԼՔՈՆՅԱՆ

---

# ԳՅՈՒԼԱԳԱՐԱԿԻ ԱԿՈՒՄԲԸ

Ստեփանավանի շրջանի Գյուլագարակ գյուղի կոլխոզի դաշտավարական երկրորդ բրիգադայի հանգստի ժամն է։

Հնամյա, մենավոր ծառի տակ նստած կոլխոզնիկներն ուշադրությամբ լսում են գյուղի ակումբի վարիչ ընկ. Լիպարիտ Սարգսյանի զրույցը՝ ՍՍՌՄ ժողովրդական անտեսության վերականգնման ու զարգացման հնգամյա պլանի մասին։ Նրա զրույցը հասկանալի է, տպավորիչ, պատկերավոր ու լի համեմատություններով։ Այս պատճառով էլ ամեն անգամ ակումբի վարիչի երևալը ուրախություն է պատճառում կոլխոզնիկներին, նրան ամեն օր անհամբեր սպասում են բոլոր բրիգադաներում։

Զրույցն ավարտելուց հետո նա բարձրաձայն ընթերցում է թերթերի թարմ համարներից կարևոր նյութեր, ապա կոլխոզնիկներին ծանոթացնում բրիգադայի իլյիչովկայի նյութերի հետ, որոնք նվիրված են

այդ բրիգադայի երեկվա աշխատանքի արդյունքներին։

Այդ նույն ժամին ակումբի մասսայականը ընկ. Պառավյանը և ակումբի ագիտատորները, աշխատանքի պլանի համաձայն, զրույցներ են անցկացնում մյուս բրիգադաներում։ Այդ ժամին ակումբի շենքը փակ է։ Ակումբային աշխատանքը ամբողջովին փոխադրվել է դաշտ։

Ակումբի վարիչը բրիգադաներից գյուղ է վերադառնում երեկոյան կատարվելիք աշխատանքը նախապատրաստելու համար։

Դեռ հեռվից մի նորատունկ պուրակ է երևում, որի կենտրոնից անցնող ծառուղին տանում է դեպի Գյուլագարակի ակումբի մուտքը։

Այս տարի, վաղ գարնանը, ակումբի վարիչի նախաձեռնությամբ ինքնագործ խմբակի անդամներն ու ակումբի ակտիվը ավելի քան 250 դեկորատիվ ծառ տնկեցին շենքի առաջ, ստեղծեցին մի գեղեցիկ պուրակ և ցանկապատեցին այն։

Մայիսի 1-ին Գյուլագարակի կոլխոզն այդ պուրակի կենտրոնում կանգնեցրեց ընկեր Ստալինի մեծադիր արձանը։

Ակումբի շենքի ճակատին դեռ հեռվից երևում են մի շարք լոզունգներ, որոնք կոչ



են անում լարել բոլոր ուժերը նոր հնգամյա պլանի կատարման ու գերակատարման համար։

Ճաշակով է զարդարված նաև ակումբի ներսը, ամեն առարկա գտնվում է իր տեղում։ Ակումբի ներքին գեղարվեստական ձևավորման հիմնական խմաստը չորրորդ հնգամյա պլանի հարցերն են։ Հնգամյակի հիմնական թվերն արտահայտված են դիագրամաներով ու կորագծերով։ Ակումբի վարիչ ընկ. Սարգսյանը, միաժամանակ շնորհալի նկարիչ լինելով, ոչինչ չի խնայել ցուցադրական ագիտացիայի գործը լավ կազմակերպելու համար։ Նա մի մեծածավալ ալբոմ է կազմել, որի մեջ գեղեցիկ դիագրամաներով ու մեջբերումներով արտահայտել է հնգամյա պլանի մասին Օրենքի հիմնական հատվածները։ Այժմ նա աշխատում է Հայկական ՍՍՌ հնգամյա պլանին նվիրված ալբոմի վրա։

Ցուցադրական ագիտացիայի գործը կազմակերպված է ոչ միայն ակումբի ներսում, այլև գյուղամիջում։ Սարգսյանի գրած 22 մեծատառ լոզունգները զարդարում են գյուղի տարբեր մասերում գտնվող շենքերի պատերը։

Գյուղի կենտրոնում կառուցված է մի

ցուցափեղկ, որի վրա ամեն օր փակցվում են կենտրոնական ու տեղական թերթերի թարմ համարները։ Աշխատանքից ազատ ժամերին կոլխոզնիկները հավաքվում են ցուցափեղկի առաջ ու կարդում օրվա նորությունները։

Ակումբի աշխատանքի պլանը աչքի է ընկնում իր բազմազանությամբ։ Այնտեղ գյուղի ուսուցիչների, ագրոնոմների, բժշկի միջոցով հաճախ գիտահանրամատչելի դասախոսություններ են կարդացվում, տարվում են ակումբին կից գրական, բնագիտական, պատմաաշխարհագրական, ագրոզոոտեխնիկական խմբակների պարապմունքները։

Օրվա աշխատանքից հետո կոլխոզնիկներն ամեն երեկո ակումբ են հաճախում։ Նրանց կուլտուրական հանգստի համար ակումբում ստեղծված են բոլոր պայմանները։

Ակումբն ունի ընդարձակ դահլիճ, որը նույնպես ճաշակով զարդարված է։ Ակումբըն իր շուրջն է հավաքել գյուղի շնորհալի կատարողներին։ Շաբաթական երկու-երեք անգամ այդ դահլիճում կոլխոզնիկները դիտում են երգի-պարի և թատերական ինքնագործ խմբակների ելույթները։ Գյուղա-



գարակի երգի-պարի խմբակը մեծ համբավ ունի Ստեփանավանի շրջանում։ Նա շրջանային ստուգատեսի ժամանակ միշտ առաջին տեղն է շահել։ Ուշագրավ է նաև այն, որ երիտասարդների հետ միասին այդ խմբակում մասնակցում են 60—70 տարեկան ծերունիները։ Նրանք շրջանի գրեթե բոլոր գյուղերում ելույթներ են ունեցել։

Ահա այսպես է աշխատում Գյուլագարակի կոլխոզային առաջին կարգի ակումբը։

Շ. ՍԻՄՈՆՅԱՆ

(Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Կուլտուր-լուսավորական Հիմնարկների Գործերի Կոմիտեի կենտրոնական մեթոդ կաբինետի վարիչ)

# ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ԳԻՇԵՐԱՅԻՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԸ

Մարքսիզմ-լենինիզմի համալսարանները հանդիսանում են սովետական ինտելիգենցիայի իդեական— քաղաքական մակարդակի բարձրացման կարևորագույն միջոցներից մեկը։

1944 թ. դեկտեմբերից վերսկսեց իր աշխատանքները ՀԿ(բ)Պ Երքաղկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի գիշերային համալսարանը։ Համալսարանն ունի երկու ֆակուլտետ՝ տնտեսագիտական և փիլիսոփայական, որտեղ ընդգրկված են 100 ունկնդիրներ։ Համալսարանում դասավանդում են մայրաքաղաքի լավագույն գիտական ուժերը, այդ թվում՝ ակադեմիկոս Ս. Կարապետյանը, պրոֆեսոր-դոկտոր Վ. Ռշտունին, դոկտոր Հ. Թումանյանը, փիլիսոփայական գիտությունների թեկնածուներ՝ Հ. Ասլանյանը, Ղ. Վարդապետյանը և ուրիշները։

Ունկնդիրների մեծ մասը հանձնել են



քննությունները բարձր գնահատականներով։ Առաջավոր շարքում կարելի է նշել՝ Մ. Ջոհրաբյանին, Ն. Ավագյանին, Ա. Սարգսյանին, Ն. Կարախանյանին, Ա. Գալստյանին և ուրիշներին։

Ընդառաջ գնալով մայրաքաղաքի ինտելիգենցիայի օրավուր աճող պահանջներին Մարքսիզմ-լենինիզմի համալսարանին կից ընթացիկ տարում կազմակերպվեց գիտական աշխատողների բաժին։ Այս բաժնում սովորում են քաղաքի գիտա-հետազոտական հիմնարկների և բարձրագույն հաստատությունների գիտական աշխատողները՝ թվով 112 հոգի։

Համալսարանում մեծ տեղ է հատկացված սեմինարներին, որոնք օգնում են նյութի լավ յուրացմանը և գիտելիքների խորը ամրապնդման գործին։

Մեր աշխատանքների հաջողությունը խոշոր չափով կախված է ռայոնական և տեղական կազմակերպությունների ամենաբյա օգնությունից։ Պարտադիր պետք է հետաքրքրվեն կոմունիստների մարքսիզմ-լենինիզմի ուսուցմամբ, ստուգեն նրանց հաճախումները համալսարանի պարապմունքներին և ներգործեն ու համա-

կոմտասխյան միջոցներ ձեռք առնեն նրանց նկատմամբ, ովքեր լուրջ վերաբերմունք ցույց չեն տալիս իրենց իդեական — քաղաքական մակարդակի բարձրացմանը։

Ա. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ

(ՀԿ(բ)Պ Երևանի կոմիտեին կից Մարքսիզմ-Լենինիզմի գիշերային համալսարանի ունկնդիր):

— — ○ — —

## Գիտե՞ք արդյոք

★ Շանթարգելը, որը ամպրոպի էլեկտրական հարվածից հուսալիորեն պաշտպանում է ռազմական շինությունները, պալատները, գործարանները, երկնամբարձ շենքերը, հնարել է ռուսական գիտության հայր Մ. Վ. Լոմոնոսովը:

★ Լուսարձակը Ռուսաստանի հրկնակի զավակն է։ Նրա վոլտյան աղեղի լույսը հնարել է առաջին ռուս էլեկտրոտեխնիկ Վ. Վ. Պետրովը, իսկ նրա օպտիկայի կոնստրուկցիան և սարքավորումը հնարել է էլեկտրոտեխնիկ Վ. Ն. Չիկոլեր:

★ Հավասարապես տարածվող էլեկտրական լույսը լուսավորում է գործարանները, թատրոնները, լսարանները, բնակելի շենքերը, փողոցները։ Էլեկտրական լամպը ռուս գիտնական Ա. Ն. Լոդիգինի աշխատանքի արդյունքն է։

★ Ամեն օր մեր ամբողջ երկիրը ռադիոյով լսում է վերջին լուրեր, երաժշտություն, գիտնականների լեկցիաներ։ Ռադիոն,

ռադիոհաղորդումը ռուս գիտնական— էլեկտրոտեխնիկ Ա. Ս. Պոպովի հանճարեղ ստեղծագործությունն է։

★ Նավթի համաշխարհային պաշարի 88,8 տոկոսը (4 միլիարդ 679 միլիոն տոննա), տորֆի համաշխարհային պաշարի՝ 60 տոկոսը (150 միլիարդ 600 միլիոն տոննա), երկաթահանքի՝ 53,4 տոկոսը (267 միլիարդ 400 միլիոն տոննա), կալիական աղերի՝ 85 տոկոսը (18 միլիարդ 368 միլիոն տոննա) գտնվում է ՍՍՌՄ-ում։ Այդ օգտակար հանածոների պաշարով ՍՍՌՄ-ն բռնում է առաջին տեղը աշխարհում։ Իսկ քարածխի, մարգանեցի, ֆոսֆորիտների և ալյումինի պաշարներով՝ երկրորդ տեղը աշխարհում, առաջին տեղը՝ Եվրոպայում։

# ՄԵՐ բառարանը

## (ՄԱՍՆԱԳԻՏԱԿԱՆ ԲԱՌԵՐ ԵՎ ՏԵՐՄԻՆՆԵՐ)

Ացետիլեն.— *Անգույն, թունավոր և տհաճ հոտ ունեցող գազ է։ Վառվում է պայծառ գույնով։ Գործածվում է լուսավորելու, մետաղներ զոդելու և իբրև ելանյութ քիմիական մի շարք նյութեր ստանալու համար (լատ. «ացետոն» քացախ և հուն. «իլե» ծառ բառերից)։*

Էթիլային սպիրտ.— *Յնդող հեղուկ, որը ստացվում է խաղողաշաքարից խմորման ճանապարհով։ Լայնորեն կիրառվում է արտադրության մեջ որպես լուծիչ նյութ, ելանյութ է մի շարք բժշկական նյութեր ստանալու համար։ Ստացվում է նաև ացետիլենից։*

Կաուստիկ սոդա.— *Կծու նատր, որը լայնորեն կիրառվում է օճառ եփելու, տեքստիլ արդյունաբերության և այլ նպատակների համար (հուն. «կաուստիկոս» այրիչ և ֆր. «սոդ» ածխաթթու նատր բառերից)։*

**Կարբիդ կալցիոն.**— *Պինդ, գորշագույն նյութ, որ ստացվում է կրի և ածուխի խառնուրդը էլեկտրական հնոցում բարձր ջերմաստիճանի տակ շիկացնելուց։ Նրա վրա ջուր ածելիս ստացվում է ացետիլեն։ Ներկայումս նրանից ստանում են նաև կաուչուկ (լատ. «կարբո» ածուխ և «կալցիս» կիր բառերից)։*

**Սելիտրա.**— *Նատրիոնի, ամմոնիի, կալիի և այլնի ազոտաթթվական աղեր, որոնք գործ են ածվում պայթուցիկ նյութեր արտադրելու ժամանակ, ինչպես նաև հողը պարարտացնելու համար (լատ. «սալ» աղ և «նատրիոն» բառերից)։*

**Սուպերֆոսֆատ.**— *Արհեստական պարարտանյութ, որը պատրաստվում է ծծմբական թթվի և ֆոսֆորական միացություններից՝ ապատիտներից (լատ. «սուպեր» վեր, գեր բառից)։*

**Ֆենացետին.**— *Սպիտակ բյուրեղային փոշի, որ գործ է ածվում գլխացավի դեմ և մարմնի տապը մեղմացնելու համար (հուն. «ֆենո» լուսավորում եմ և լատ. «ացետում» քացախ բառերից)։*

**Ֆոսֆատ.**— *1. Ֆոսֆորաթթվի աղ, 2. Հանքային նյութերի մի խումբ, որ պարունակում է ֆոսֆորական թթու։ Ֆոսֆատները մեծ նշանակություն ունեն առանձնապես գյուղատնտեսության համար որպես պարարտանյութ։*



**Ֆոսֆոր.**— *Քիմիական նյութ. գտնվում է բույսերի, ոսկորների, ինչպես նաև հանքային նյութերի մեջ։ Ֆոսֆորի միացությունները մեծ չափով կիրառվում են խեցեգործության, տեքստիլ արդյունաբերության, բժշկության և առանձնապես գյուղատնտեսության մեջ (հուն. «ֆոս» լույս և «ֆորոս» բերող, տվող բառերից)։*

Պատասխանատու խմբագիր
*Ս. ԱՐԵՇՅԱՆ*

Խմբագրության հասցեն.— *Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռ. 23—30։*

*ՎՖ 01199 պատվեր № 632. տիրաժ 10.000*
*Ստորագրված է տպագրության 22/V 1946 թ.*

*ՀՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պոլիգրաֆ և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան*